*րա· և ի նմանէ պարտեալ՝ ամօթալի դիմօք յետս էին դարձեալ։ Եւ այժմ իբրև Հասին յերկիրն Վրաց, զնոյն կարծելով երկնչէին և զտեղի առին աւուրս Գ. և չև ևս էր եդեալ մարտ ճակատուն, և ոչ պատգամս և դեսպանս առ իրեարս գնացեալ։ Եւ Վրացն խորհեալ ընդ միմեանս՝ ասեն ցՍիմոն. «Թո՛յլ տուր՝ այսօր տարցուք զտունս և զընտանիս մեր առ լերամբք, և մեք դարձցուք՝ յամենայն սրտէ և յամենայն զօրութենէ մերմէ արեամբ չափ և մահու պատերազմեսցուք ընդ Թուրքացն, և յաղթեսցուք նոցա զօրութեամբն Աստուծոյ։ Բայց վասն ընթացից նուրին բառնալոյ զսահման աղօթից ի յազգէս քրիստոնէից, մինչ զի ի բոլոր տարին ի դուռն եկեղեցւոյն ոչ ընթանան ի փոքունց մինչև ի մեծամեծս, վասն այսր իրաւունքն Աստուծոյ ոչ ետ թոյլ կատարել խորհրդոցն Վրաց՝ զի ասէ Աստուած մարգարէիւն. «Ապա թէ ո՛չ դառնայք առ նա, զսուր իւր սրեալ է, և զաղեղն լարեալ»․ և կամ թէ ասէ. «Միթէ վերանայցէ՞ փայտատ առանց փայտահարի, և սղոց առանց ուրուք ձգելոյ»․ և դարձեալ ասէ՝ «Ես սպանանեմ, և ես կեցուցանեմ, հարկանեմ, և ես բժշկեմ»․ և կամ ասէ. «Ձի զօր կամի Տէր կորուսանել՝ յիմարեցուցանէ»։ Վասն որոյ յիմարեալ Սիմոնին այժմ՝ նստի ի գինի սակաւ արամբք։ Եւ յայնմ կողման՝ յորում էր Սիմոնն, Թուրքացն ամենևին ոչ ունելով կարծիք զՍիմոնին անդ լինելն, բայց աւարի պատճառաւ՝ Թուրքացն գունդ ինչ բաժանեալ և ի կողմն յայն գնացեալ, և տեսեալ զՎրացի ոմն՝ ըմբռնեն. և յառաջ գնացեալ սակաւ ինչ՝ զՍիմոնին գունդն տեսանեն. և ի յըմբռնելոյն հարցեալ զո՞վն լինել այնմ, և լուեալ ի նմանէ՝ թէ նա ինքն իսկ է Սիմոնն, Տաճկացն յոյժ երկուցեալ՝ յետս կանգնին. և վաղվաղակի արս զօրաւորս արագընթաց երիվարօք առ բանակն Հասուցանեն, և Ջաֆար զօրապետին յայտնեն։*

Եւ նորա յոյժ զուարճացեալ, և բազում քաջ արանց խրախոյս տուեալ՝ առաքէ։ Եւ գնացեալ ըմբռնեն զՍիմոնն՝ և բերեն առ նա։ Եւ ի գալն՝ ելեալ ընդ առաջ Ջաֆարն յողջունել զՍիմոնն, ապա ի լեզուս իւրեանց մեծաձայն հնչմամբ օրհնեցին զԱստուած՝ ի լուր բանակին։ Եւ Սիմոնին զնոյն երկրորդեալ՝ ասէ. «Օրհնեալ է Աստուած, և անփոփոխ Տէրութիւն նորա. զի Տէր մեռուցանէ, և Տէր կեցուցանէ, իջուցանէ ի դժոխս՝ և հանէ»։ Եւ Ջափարն անդէն սուրհանդակ արձակեալ առ խոնդեկարն յաւետել նմա. և ինքն առեալ զՍիմոնն՝ ժամանէ ի Թավրէզ։ Եւ հրաման ել ի խոնդկարէն յամենայն տեղիք տէրութեան իւրոյ՝ զարդարել զփողոցս քաղաքաց, և ամենայն ումեք աւուրս երեք նստել ի խրախութիւն ընդ տիւ և ընդ գիշեր (և եղև այնպէս), և զՍիմոնն առ ինքն տանել։ Եւ Ջաֆարին պահեալ զՍիմոնն ի Թավրէզ յաւուրս ձմերան և գարնան, ի յամարան ժամու առաքեաց առ կայսր՝ որ ի Բիւզանդիա. և ի գնալն՝ հասեալ ի կարնոյ քաղաք՝ զտեղի առին վասն ուրումն իշխանի հրովարտակաց դպրի, որ ի լեզուս իւրեանց Էօղընէ ասի. ընդ իւր ունելով արանց աւելի քան ԼԻ աց ապստամբելոց ի յաւագէն իւրմէ և ի Թագաւորէն ևս։ Եւ այս երկու ամ է՝ որ զգլխահարկ ժողովրդեանն՝ որ վասն Թագաւորաց է, յինքն կորզեալ ժողովէ։ Այլ և վասն Սիմոնին զգուշութեամբ պատուէր տուեալ է զօրաց իւրոց՝ յափշտակել ի տարողացն և առ ինքն հասուցանել։ Յաղագս այս պատճառի Սիմոնն արգելեալ կայ ի յԱրզրում քաղաքի։ Օրհնեալ է Աստուած, զի վերջն նմա է գիտելի։ *

---

* Գրչագիր օրինակն՝ յորմէ տպագրութիւնս այս արարաւ, գաղափարեալ է ձեռամբ արգոյ բարեկամի իմոյ Պ. Ոսկանայ Գէորգեան Յովհաննիսեանց Երևա՛ ոէն գտելոյ ի վերջ կոյս

առ սուլտանն Հալպա զաւուրս բազումս, և յորժամ լուաւ զմահ եղբարցն, եկն յաշխարհն Կիլիկիոյ օգնականութեամբ սուլտանին Հալպայ, կամեցաւ տիրել աշխարհին և ոչ կարաց. այլ դարձաւ անդրէն ի Հալպ, և միւսանգամ դարձեալ խնդրեաց ի սուլտանէն զօրս բազումս, և շարժեցաւ գալ ի վերայ քրիստոնէից աւերել զաշխարհն՝ և օգնականութեամբ անօրինացն տիրել երկրին։ Այլ իշխանքն Հայոց՝ յորժամ լուան զգալն նորա, առաքեցին առ նա զի մի՛ եկեալ տիրեսցէ աշխարհին, և մի ինչ վնասեսցէ քրիստոնէից զօրքն անօրինաց, և նա լուեալ զայն՝ դարձոյց զզօրսն սուլտանին մեծաւ շնորհակալութեամբ։

Եւ Մլեհն եկեալ տիրեաց աշխարհին։ Իսկ պայլն Թումա՝ երկուցեալ ի նմանէ՝ փախուցեալ գնաց յԱնտիոք, և զԹորոսի որդին կալան ամպարիշտ ոմանք և սպանին։ Այս Մլեհ էր այր չարասիրտ յոյժ, և բազում աղտեղի գործոք լցեալ. վասն որոյ սպանաւ ի զօրաց իւրոց ի մէջ քաղաքին Սիսայ։ Այլ Ստեփանէի մնացեալ էին Բ. որդիք, Ռուբէն և Լևոն, որք սնեալ կային առ քեռին իւրեանց Բակուրան տէրն Պապեռօնին, և յորժամ սպանաւ Մլեհն, իշխանքն և զօրքն Հայոց, յղեցեալ բերին անտի զՌուբէն որդի Ստեփանէի և կացուցին Պարոն Հայոց։

Եւ տիրեաց աշխարհին Կիլիկիոյ՝ Ռուբէն որդի Ստեփանէի, այր բարեբարոյ և իմաստուն, և առատ յոյժ։ Սա էառ իւր կին յազգէն Ֆռանկաց զՋապել դուստր Հանֆրէ տէր Դուրունին, և ծնաւ նմա դստերս երկուս, Ալիծ և Ֆիլիպ։ Իսկ ի հասանել վախճանին Ռուբէնայ, կացոյց յաթոռն զեղբայր իւր զԼևոն, յանձնարարեալ նմա զերկոսին դստերսն իւր, և ինքն վախճանեալ թաղեցաւ ի Դրազարկն։ Յետ մահուան Ռուբէնի՝ տիրեաց աշխարհին Կիլիկիոյ, Լևոն եղբայր իւր, որ Ը. երորդ իշխող էր յազգէ Ռուբինանց և եղև առաջին թագաւոր Հայոց ի Կիլիկիայ՝ որ և

քաջութեամբ և իմաստութեամբ տիրեաց Հայրենի աշխարհին, և այլ բազում գաւառաց և աշխարհին Խաղրիայ չինեաց և բազում գիւղս և ամրոցս ի պէտս պաշտպանութեան աշխարհին իւրոյ։ Արար և պատերազմունս մեծամեծս որպէս գտանի ի կիպրոսեան գիրս պատմութեան նորա։ Իսկ զերկոսին դստերսն Թոմլէնի եղբօր իւրոյ կարգեաց այսպէս. զՄելիզէնն ետ յամուսնութիւն Բեմունդ բըռբընձին Անտիոքայ, յորմէ ծնաւ որդի մի Բովլէնն անուն զոր կոչէին բրինձ Բոմլէն։ Այս բրինձ Բոմլէնն՝ ա. իւր կին զՀէլուիզ դուստր Հեմրի թագաւորին Կիպրոսի, և ծնան նմա դստերս երկուս, Էսզիւ և Մարիա. Էսզիւն մեռաւ առանց կարգելոյ, և Մարիայն եղև կին Ֆելիպ տը Մոնֆորդին որ տիրէր Տրոյ։ Եւ միւս դուստրն Բովլէնի Ֆիլիպն՝ եղև կին թագաւորին Յունաց Լասքարէ, և ծնաւ որդի մի Կոստանդին անուն, այլ ոչ ժամանեաց ի մեծութիւն վախճանեցաւ փոքր. և յետ ամաց ինչ տիրելոյ Լևոնի աշխարհին Կիլիկիոյ, առաքեցաւ նմա յընտրութեն Ալամանաց՝ և ի կայսերն Յունաց թագ թագաւորութեան, և նա ընկալեալ օծաւ ի մայրաքաղաքն Տարսուս թագաւոր ազգիս Հայոց, որ եղև առաջին թագաւոր յաշխարհն Կիլիկիոյ. և էառ իւր կին՝ զՍպիլ դուստր Հեմրի թագաւորին Կիպրոսի. և ծնաւ դուստր մի Զապէլ անուն, և յետ ամաց ինչ վախճանեցաւ թագաւորն Լևոն բարիոք խոստովանութեամբ, և թաղեցաւ ի քաղաքն Սիս, և մասն ինչ ի նմանէ թաղեցաւ ի վանքն Ակներ զոր ինքն էր շինեալ։ Իսկ յետ մահուան թագաւորին Լևոնի, եկաց պայլ աշխարհին՝ Ադամ տէրն Մանիօնին, որ յետ աւուրց ինչ սպանաւ ի Հաշիշեցն ի քաղաքն Սիս։ Եւ եղև պայլ Կոստանդին Գունդստապլն որ էր քեռորդի թագաւորին Լևոնի, և տէր Բարձրբերդոյ և Պապեռոնին։ Իսկ յաւուրս սորա՝ [illegible] Բովլէնն եկեալ յԱնտիոքայ գնաց ի

Կուռիկոս և տարեալ ընդ իւր զմայրն իւր ետ ի կնութիւն Վահրամ Մարաջախտուն և նա ամուսնացաւ ընդ նա, և զօրինօք ամուսինն իւր վարեալ առաքեաց առ եղբայր նորա Լևոն տէր Բերդկանն, և Մօխրոտին։ Իսկ բըրինձ Ռովբէնն՝ և Վահրամ Մարաջախտն եկեալ ի Տարսուս առեալ ընդ իւրեանս զիշխանսն որ անդ կային, զՄօլևոնցիք, և Ջապլհասնանք և զայլսն, և եկեալ նոքօք տիրեցին Ատանոյ, և անտի ելեալ երթային ի Մսիս, վստահացեալ ի զօրս իւրեանց համարէին տիրել ամենայն աշխարհին և արտաքս ընկենուլ զԶապէլ դուստր թագաւորին Լևոնի. ի սեպհական աթոռոյ հօրն նորա այլ Աստուած ոչ ետ թոյլ կատարել զչարութիւն կամաց իւրեանց. հանդէպ ելեալ նոցա պայլն Հայոց Կոստանդին սակաւ զօրօք և պատերազմեցաւ ընդ նոսա մերձ ի Մսիս, և շնորհօքն Աստուծոյ յաղթեաց նոցա։ Իսկ բրինձ Ռովբէնն՝ և այլ իշխանքն փախուցեալ գնացին ի Տարսուս և անդ ամրացան և պայլն զհետ եկեալ զօրօք պաշարեաց զնոսա, և յետ բազում աւուրց էառ զքաղաքն Տարսուս, և կալաւ զբրինձ Ռովբէն՝ և զիշխանսն նոցա, և եդին ի բանտի որ և անդ վախճանեցան։ Եւ անտի գնացեալ ի Կուռիկոս առին զնա՝ և զայլ ապստամբեալ ամրոցսն շուրջանակի։

Իսկ յետ այս ինչ գործելոյ՝ խորհուրդ արարեալ իշխանքն Հայոց, ամուսնացուցին զԶապէլ դուստրն թագաւորին Լևոնի ընդ Ֆիլիպ որդի կոյր բրընձին։ Եւ Ֆիլիպն օծաւ թագաւոր երկրորդ՝ ի քաղաքն Տարսուս, և ամենեքեան մտերմութեամբ ծառայէին նմա, իսկ նա խորհուրդ չար եդեալ ի մտի իւրում. հրամանաւ հօրն իւրոյ և թելադրութեամբ ամենայն Անտիոքացւոց և Դամիկցեց, զի զեկեղեցիսն Հայոց՝ և զիշխանսն զամենեսին ջնջեսցեն. և Ֆռանկք կացուսցեն ի տեղի նոցա, զոր լուեալ ոչ կարացին տանել այնպիսի ամպարշտութեան, այլ յաւուր միում

մինչ կային ի Թիլն բերդ, Ճօֆրի տէրն Սարվանդիքարին՝ և պռօքսիմոսն Տրդատ, կալան զնա, և անտի տարեալ եդին ի բանտի յանառիկն Բարձրբերդ և անդ վախճանեցաւ։ Իսկ յետ այս ինչ գործելոց՝ ամուսնացուցին զԹագուհին Զապէլ ընդ Հեթում որդի Կոստանդեայ պայլուն Հայոց, և օծին զնա թագաւոր մեծաւ խնդութեամբ ի մայրաքաղաքն Տարսուս։

Եկաց երրորդ թագաւոր Հայոց, ամենագովելին Հեթումն որ առաւելեաց բարութեամբ քան զամենայն թագաւորս, և ետ նմա Աստուած կրկին շնորհս նորոգելոյ՝ և անեցուցանելոյ զթագաւորութիւնս Հայոց։ Եւ ծնան նմա որդիս երիս երիս. Լեւոն, Թորոս, Ռուպէն, և դստերս Ե. (8), Սպիլ, Ֆիմի, Ռիթա, Զապէլ, Մարիայ. սորա փոքր որդին Ռուպէն վախճանեցաւ մատաղ տիօք և Թորոսն սպանաւ ի զօրացն Մսրայ ի կապանն Մառոյ, յորում աւուր և զանդրանիկ եղբայր նորա Լեւոն կալանաւոր, արարեալ տարան ի Մսր, զոր յետ երկուց ամաց գնեաց զնա հայր նորա ի ծառայութենէն Մսրայ, և ետ գին սուլտանին, զքերդն Դարպսակ զՍօղուր աշխարհն որ էր խուշտաշ սուլտանին և կայր ընդ ծառայութեամբ Թաթրուն, զոր խան Ապաղայն շնորհեաց զնա թագաւորին Հեթմոյ վասն թափման որդոյ նորա։ Իսկ Սպիլ դուստր սորա եղև կին՝ Պեմունդ բրնձին Անտիոքայ և Գունթին Տրապօլսոյ։ Ֆիմին՝ եղև կին Ճուլիան Սայիտոյ տիրոջն, Ռիթայն եղև կին՝ Կոստանդին Սարվանտիքարին տիրոջն, Զապէլն մեռաւ անկարգ։ Եւ Մարիայն եղև կին, Կի տը Պլնին։ Եւ ի հասանել վախճանի թագաւորին Հեթմոյ, առ եզր Պարատիս գետոյ որ կոչի Ակներ, նախ կրօնաւորեցաւ և կոչեցաւ անուն նորա Մակար, և ապա հանգեաւ՝ և թաղեցաւ ի Դրազարկն։ Յետ որոյ եկաց յաթոռն նորա անդրանիկ որդին նորա՝ Լեւոն։

Լեւոն որդի Հեթմոյ՝ եկաց չորրորդ [illegible] այոց. և

ծնաւ ի քաղաքն Ցարսուս յաւուր յայտնութեան Ցեառն։ Սա՝ էառ կին զկեռան դուստր Հեթմոյ տեառն Լամբրունին, և ծնան նմա որդիք Է՝ Հեթում, Թորոս, Սմբատ, Կոստանդին, Ներսէս, Օշին, Ռուբէն։ Եւ դստերս Գ, Զապէլ, Ռիթա, Թեֆանոյ։ Սա վախճանեցաւ ի քաղաքն Սիս և թաղեցաւ ի Դրազարկն։ Յետ որոյ տիրեաց աշխարհին Կիլիկիոյ, անդրանիկ որդին նորա Հեթում։ Եւ Թորոս եղբայր սորա՝ էառ կին զՄարգրիտա դուստր Յիկոր Լուսինեանց թագաւորին Կիպրոսի, և ծնաւ նմա որդի մի Լեւոն անուն։ Իսկ աւագին քոյր սոցա Զապէլ եղև կին Ամօրի Սրոյ տիրոջն, և որդւոյ թագաւորին Կիպրոսի, մի[illegible] [illegible]։

Դ.

ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՌՈՒԲԻՆԵԱՆ ԻՇԽԱՆԱՑ

«Ի Թուականութեանս Հայոց ՉԼԵ՝ յամի եղեալ կատարեցաւ աստուածախօս մատենիս, հրամանաւ աստուածասէր և ամենիմաստ՝ բարեպաշտ և հանճարեղ պարոնին Հեթմոյ՝ որդւոյ Քրիստոսապսակ սուրբ արքային Լեւոնի։ Որ լի է պատարուն իբրև զծաղկազարդ բուրաստան հաւաքեալ ի հին և ի նոր օրինաց, ի պէտս պայծառութեան տօնից տէրունականաց, հրաշափառ ծննդեան Քրիստոսի և կենսաբեր չարչարանացն, փառաւոր յարութեանն, և սքանչելի համբարձմանն, պայծառ գալստեանն սուրբ Հոգւոյն, և այլոց փրկչական տնտեսութեանցն։ Ընդ որս և սրբոցն Աստուծոյ, առաքելոց և մարգարէից, բազմաչարչար մարտիրոսաց՝ հայրապետաց և միանձանց, և ամենայն հաճոյացելոց Աստուծոյ, որով մեծախորհրդութիւնն, և շնոր՝

զուամս և ամենայն ազգաց քրիստոնէից տեղի և տուն պատրաստեալ յարգեցաւ, բարձրացաւ և հռչակեցաւ յամենայն լեզուս։ Որք զԿիլիկիայ անուն լքեալ՝ Թորոսի երկիր զաշխարհն նորին վերաձայնէին. և նա բարւոք վարուք կենցաղավարեալ հանգեաւ ի Քրիստոս, և թաղեցաւ ի սուրբ ուխտն Դրազարկն, թողեալ իւր որդի մի, որ նենգեալ սպանմամբ յամբարշտաց ումանց։ Վասնորոյ ընկալաւ զիշխանութիւն մեծին Թորոսի եղբայր նորին Լևոն. որ և ծնեալ երիս որդիս, զԹորոս, զՍտեփանէ, և ի հարճէ զոմն Ռուբէն անուն։ Այս Լևոն տիրեալ Մամեստիոյ և Տարսոնի, և ամենայն սոցին նահանգի, և աջակցեալ Ֆռանգաց ի գործ պատերազմի՝ քաջութեան անուն ստացաւ. և կացեալ յիշխանութեանն կարողագոյն կենօք և առաքինի վարուք, մինչև եկն թագաւորն Յունաց Փռափռոժէն ի Կիլիկիայ և պատրանօք կոչեալ զԼևոն ըմբռնեաց ի կապանս երկու որդովքն Թորոսիւ և Ռուբինաւ, ոչ դիպեալ անդ Մլեհին և Ստեփանէի, զի կային յՈւռհայ, առ կոմս նորին, որ էր քեռի նոցեանց։ Առեալ Փռափռոժէն զԼևոն որդւովքն, տարաւ ի Կոստանդինուպօլիս և արկ ի բանտ. յորում տեղւոջ Ռուբէն վասն անհնարին քաջութեանն կուրացուցին կուրացեալ նախանձով ազգն Յունաց։

Եւ մեծն Լևոն (և) որդի նորա Թորոս մնացին անդանօր ի բանտի. և իշխանութիւն Հայոց բարձաւ ի Կիլիկիոյ, տիրելով վերստին Յունաց։

Յետ ժամանակաց ինչ լինելոյ ի բանտի՝ ետես երազ որդի նորա Թորոս, և պատմեաց հօր իւրում, թէ տեսի յանուրջս, զի այր ոմն տայր յիս նկանակ մի հացի, և ձուկն ի վերայ. և ես առի և քեզ ոչ ետու ի նմանէ։ Եւ հայրն խնդացեալ ելոյծ զտեսիլն որդւոյն, թէ ունիս վերստին տիրել Կիլիկիոյ, զոր նախնիքն մեր կալան քաջութեամբ. այլ և ընդարձակեսցես զտէրութիւնն քո մինչև

ի ծովն, ղոր ձուկն նշանակեաց։ Սակայն եւ յայնմ ոչ ժա-մանեմ՝ ոչ եւ եղեւ խուկ. զի մեռաւ մեծն Լեւոն ի կոստանդ-նուպօլիս։

Եւ մեծն Թորոս զտեալ ագնուութիւն յԱստուծոյ, եւ գի-պօղ ժամու վերստին եկն ի Կիլիկիա, եւ ձեռնտուութեամբ լեռնակողմանցն Տորոսի ազգին Հայոց՝ որ մնացեալ էին անզանոր, տիրեաց նախ Վահկային, եւ ամենայն փոքրկոյ։ Եւ յետ սակաւուց Անարզաբայ եւ ամենայն գաւառակաց-մանն. զորոյ զլեռնական գաւառեանն ի կոստանդնուպօլսէ եւ զարքեւոյն Կիլիկեայ՝ այլ եւ այլ օրինակաւ պատմեն գիրք. բայց որպէս եւ է զթուլթեամբն Աստուծոյ եւ ազնութեամ-բքն ազատեալ ի բռնութէ վերստին տիրեաց իշխանութեանն նախնեաց իւրոց, զոր յափշտակեալ էր Յունաց։ Եւ եւս ընդարձակեալ զպարզուկ տէրութեան իւրոյ, գնաց ի Մա-մեստիայ. եւ առ զնա։ Եւ մինչ կայր անդ յանհոգս. Տուկն Յունական ազգին, որ էր ի կայսերէ կարգեալ, ժողովեալ զզօրս իւր, եւս եւ զՀայկազունսն, զՆաթանիլեանք զՏեառ-ոյն Ասկուռայ, եւ զՀեթում տէր Լամբրոնին. որք եւ նոքա յարեւելից ի սորայն խանձյելացեալ խորս տուեալ եկին եւ կալան զկողմանս. Նախատացեալ, եւ մտին ընդ հնա-զանդութեամբ կայսերն Յունաց։ Վասնորոյ եւ ընդ նոցին զօրաց եւ զօրապետաց եկին ի վերայ Թորոսի ի Մամեստիա՝ Եւ նա յարուցեալ սակաւուք արամբք՝ անզէն եւ անպատ-րաստ ի վերայ անկաւ բիւրական զօրացն՝ յաղթական ժա-մու. զՅոյնսն եսպան, եւ զՀայկազունսն ձերբակալ արա-րեալ կալաւ, եւ յետոյ ազատեաց։

Եւ այսպէս քաջացեալ էառ զՏարսոն եւ զյոլով մասն Սավռիոյ։ Զորոյ քաջութեան համբաւ լուեալ կայսերն Էմ-մանուէլ՝ որդւոյն փեռափեռօժէնին, մտմտեալ բերել զառ ի ծ՝ եկն զօրօք բազմօք ի Կիլիկիայ՝ ըմբռնել զԹորոս. եւ պա-շարեալ զնա ի դղեակն Բարձրբերդ կոչեցեալ։

Յարձակեալ ապա քաջն Թորոս ի վերայ ժողովոյն Յունաց՝ զբազումս եսպան, և զյոլով Սեւաստիոսս գերի վարեալ ի դղեակն, փախուցեալ ընդ ոսկւոյ կայսերն Մանուէլի, և զգանձսն բաշխեաց իւրոյ հետևակաց զօրացն:

Ընդ որոյ քաջութիւնն և առատամտութիւնն զարմացեալ՝ կոչեաց զնա իւր յորդեգրութիւն. և ետ զԿիլիկիա ձեռնագրով և ոսկի բուլով Թորոսի, և այլ գանձս բազումս. և ինքն գնաց ի Կոստանդնուպօլիս:

Եւ վերստին լուեալ զհամբաւ բարութեան և զքաջութեան մեծին Թորոսի կայսրն Մանուէլ, և ոչ կարացեալ տանել նախանձու, սկսաւ կաշառօք գրգռել զՂլիճ-Ասլան սուլթանն յիկոնիոյ ի վերայ Թորոսի. որ և եկեալ բազում զօրօք ի Կիլիկիա պաշարեաց զԹիլն աւանն. և ի Տեառնէ պատուհասեալ ախտիւ և ցաւօք, զորոց զերիվարսն շանանանն սպանեաց:

Այլ և մեծն Թորոս ասպատակեալ զաշխարհն յիկոնիոյ աւերեաց, և զառ և զաւար էած ի Կիլիկիա: Վասնորոյ յայտնանէ Կլիճ Ասլան և ի հարուածոցն Թորոսի նեղեալ՝ ամօթով դարձաւ յաշխարհն իւր, ուէր երդմամբ եդեալ ընդ մեծին Թորոսի, և այլ ոչ հրապուրեցաւ ի բանսն Մանուէլի:

Բայց իբրև եկն Թորոս ի Կոստանդնուպօլսէ ի Կիլիկիա, լուեալ եղբօր նորա Ստեփանէի՝ եկն առ նա: Բայց Մլեհն մնաց առ Նուրատտին սուլթանն Հալպայ. և Ստեփանէ ձեռնտուութեամբ եղբօր իւրոյ՝ գնաց ի Սեաւ լեառն և տիրեաց ամենայն կողմանցն այնոցիկ. այլ և կալաւ զԳերմանիկէ և զՊեհեսնի: Եւ գալեալ ի Յունացն սպանաւ յառանդան կատայի. և թաղեցաւ ի սուրբ ուխտն Արքակաղնին, թողեալ իւր երկու որդի՝ զՌուբէն և զԼևոն, որ և յետոյ թագաւորեաց:

Այլ մեծն Թո      աջութեամբ Կիլիկիոյ և Սամ-

ըիոյ, վարէր զիշխանութիւն ըստ հաճոյից Աստուծոյ՝ զի էր այր բարեպաշտ և ողորմած, մեծախորհուրդ և առատամիտ, վարժեալ հին և նոր օրինօքն Աստուծոյ։ Տեղեակ գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից. զորմէ ասեն հոգի մարգարէութեան ունէր. որ և բազում դժուարալոյծ բանս մեկնեալ, զոր գտանի այժմ առ մեզ։ Կեցեալ սա այսպիսի բարեպաշտ կենօք՝ փոխեցաւ յաշխարհըն կենդանեաց, և հանգուցեալ եդաւ ի դամբարանի ի հռչակաւոր անապատն սուրբ ի Դրազարկն։

Եւ զերկիր իշխանութեան իւրոյ և զմատաղ որդին իւր վստահացաւ յանձըն իւր Թումաս անուն իշխան մեծ, զոր և Պայլ իսկ ետ Հայոց յետ իւր։ Այլ Մլեհն լուեալ զմահ եղբօր իւրոյ զմեծին Թորոսի, էառ զօր բազում ի Նուրատտին սուլթանէն և եկն առնուլ զտէրութիւն ի վերայ Հայոց. և բազում չար հասուցեալ աշխարհիս Կիլիկեցւոց, յորմէ նեղեալ բնակիչք և իշխանք աշխարհիս, կամօք ձեռընտու եղեն նմա, տիրեալ ի վերայ ինքեանց։ Ուստի ընդ գալն նորա՝ Թումասն փախչէր յԱնտիոք, ուստի և եկեալն իսկ էր. և զորդի Թորոսին ամբարիշտք ոմանք կալեալ սպանին։

Եւ Մլեհն տիրեաց որոց ցանկայր անձն նորա։ Սակայն վասն խստասրտութեանն ոչ կարացեալ յերկարել, վաղվաղակի սպանաւ ի զօրաց իւրոց ի քաղաքն Սիս և թաղեցաւ ի վանքն Մեծ-Քար կոչեցեալ, զոր իւր իսկ շինեալ էր։

Եւ զօրք աշխարհին առաքեալ բերին զորդիսն Ստեփանէի, որ սնանէին առ քեռին իւրեանց Բակուրան ի Տարսոն, և կացուցին իշխան և Պարոն զՌուբէն զորդի Ստեփանէի. որ եղև այր աշխարհաշէն, առատամիտ և բարեգործ, որոյ եւ համբաւ անուան նորա ընդ ամենայն աշխարհ։ Վասնորոյ Հռովմայեցիքն զնա պատուեալ յազգէ

թագաւորութեանն կին ետուն նմա· յորմէ ծնաւ երկուս դստերս։

Սակայն ի տէրանց Լամբրունի եղև դաւ նմա· զի սղաբեալ էր Ռուբէն զԼամբրուն· և նոքա նենգեալ յղեցին առ բրինձն Անտիոքու զի ելս հնարեսցէ իրացն· իսկ բրինձն խաբանօք ի ճաշ կոչեալ զՌուբէնն՝ արգել զնա յԱնտիոք, վստահանալով թէ կարասցէ այնու զԿիլիկիա առնուլ։

Այլ Ռուբէն յղեաց առ եղբայր իւր Լևոն, նստել յաթոռ Պարոնութեան, և պահել զերկիրն, և պնդել զաղար բերդին Լամբրունի։ Եւ Լևոն և իշխանքն այսպէս արարին։ Իսկ բրինձն իբրև ետես եթէ ոչինչ շահի այնու, ապա անկաւ ի բանս վաճառելոյ· զոր հաւանեալ Պարոն Լևոն, և իշխանք ետուն գանձ և երկիր· և թափեցին զՌուբէն· որ և եկեալ յինքն առեալ զպարոնութիւնն կեցեալ աւուրս ինչ բարիոք կենօք, և՝ ի վախճան մահու հասեալ խրատեաց զեղբայրն իւր բազում իմաստութեամբ և բարութեան խրատով՝ թողեալ ի նա զիշխանութիւնն և զդստերս իւր, ինքն հանգեաւ ի Քրիստոս և կրօնաւորեալ թաղեցաւ ի Դրազարկն։

Լևոն ընկալեալ զտէրութիւնն յեղբօրէն առաւելաւ յամենայն բարութիւնս քան զնախնիսն իւր։ Եւ նա ընդարձակեաց զսահմանս տէրութեանն։ Եւ մինչդեռ կայր քաջութեամբ և բարութեամբ, եկ ի վերայ նորա Ռոստոմ յազգէ Խամայէլի անթիւ զօրօք, և նկուն եղեալ օգնականութեամբն Աստուծոյ խորտակեցաւ առաջի մեծին Լևոնի, և մնացեալքն փախստական եղեն· տիրեաց և կողմանցն Սավրիոյ մինչև յԻտալիայ։ Էառ զԱռակլիա և զԿեսարիա, և ընդ գանձուց փոխանակեաց։ Բազում ամրոցս և դղեակս շինեաց, յոլով վանորայս և աղքատանոցս կազմեաց, և գոտեացն տունս և ռոճիկս պարգևեաց, և բարութեամբ զաշխարհն իւր ելից։ Զոր զբա-

րիոյ, վարէր զիշխանութիւն ըստ հաճոյից Աստուծոյ՝ զի
էր այր բարեպաշտ և ողորմած, մեծախորհուրդ և առա-
տաձեռն, վարժեալ հին և Նոր օրինօքն Աստուծոյ։ Տեղեակ
գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից. զորմէ
ասեն հոգի մարգարէութեան ունէր. որ և բազում դըժ-
ուարալոյծ բանս մեկնեալ, զոր գտանի այժմ առ մեզ։ Կե-
ցեալ սա այսպիսի բարեպաշտ կենօք՝ փոխեցաւ յաշխար-
հըն կենդանեաց, և հանգուցեալ եդաւ ի դամբարանի ի
հռչակաւոր անապատն սուրբ ի Դրազարկն։

Եւ զերկիր իշխանութեան իւրոյ և զմատաղ որդին իւր
վստահացաւ յանձն իւր Թումա անուն իշխան մեծ, զոր
և Պայլ իսկ ետ Հայոց յետ իւր։ Այլ Մլեհն լուեալ զմահ
եղբօր իւրոյ զմեծին Թորոսի, էառ զօր բազում ի Նու-
րատտին սուլթանէն և եկն առնուլ զտէրութիւն ի վերայ
Հայոց. և բազում չար հասուցեալ աշխարհիս Կիլիկեցւոց,
յորմէ նեղեալ բնակիչք և իշխանք աշխարհիս, կամօք ձե-
ռընտու եղեն նմա, տիրեալ ի վերայ ինքեանց։ Ուստի ընդ
գալն նորա՝ Թումասն փախչէր յԱնտիոք, ուստի և եկեալն
իսկ էր. և զորդի Թորոսին ամբարիշտք ոմանք կալեալ
սպանին։

Եւ Մլեհն տիրեաց որոց ցանկայր անձն նորա։ Սակայն
վասն խստասրտութեանն ոչ կարացեալ յերկարել, վաղ-
վաղակի սպանաւ ի զօրաց իւրոց ի քաղաքն Սիս և թա-
ղեցաւ ի վանքն Մեծ-Քար կոչեցեալ, զոր իւր իսկ շի-
նեալ էր։

Եւ զօրք աշխարհին առաքեալ բերին զորդիսն Ստեփա-
նէի, որ սնանէին առ քեռին իւրեանց Բակուրան ի Տար-
սոն, և կացուցին իշխան և Պարոն զՌուբէն զորդի Ստէ-
փանէի. որ եղև այր աշխարհաշէն, առատաձեռն և բարե-
գործ, որոյ եւ համբաւ անուան նորա ընդ ամենայն աշ-
խարհ։ Վասնորոյ Հռոմայեցիքն զնա պատուեալ յազգէ

թագաւորութեանն կին ետուն նմա· յորմէ ծնաւ երկուս դստերս։

Սակայն ի տէրանց Լամբրունի եղև դաւ նմա· զի սղարեալ էր Ռուբէն զԼամբրուն· և նոքա նեղեալ յղեցին առ բրինձն Անտիոքու զի ելս հնարեսցէ իրացն· իսկ բրինձն խաբանօք ի ճաշ կոչեալ զՌուբէնն՝ արգել զնա յԱնտիոք, վստահանալով թէ կարասցէ այնու զԿիլիկիա առնուլ։

Այլ Ռուբէն յղեաց առ եղբայր իւր Լևոն, նստել յաթոռ Պարոնութեան, և պահել զերկիրն, և պնդել զսղար բերդին Լամբրունի։ Եւ Լևոն և իշխանքն այսպէս արարին։ Իսկ բրինձն իբրև ետես եթէ ոչինչ շահի այնու, ապա անկաւ ի բանս վաճառելոյ· զոր հաւանեալ Պարոն Լևոն, և իշխանք ետուն գանձ և երկիր· և թափեցին զՌուբէն· որ և եկեալ յինքն առեալ զպարոնութիւնն կեցեալ աւուրս ինչ բարիոք կենօք, և ի վախճան մահու հասեալ խրատեաց զեղբայրն իւր բազում իմաստութեամբ և բարութեան խրատով՝ թողեալ ի նա զիշխանութիւնն և զդստերս իւր, ինքն հանգեաւ ի Քրիստոս և կրօնաւորեալ թաղեցաւ ի Դրազարկն։

Լևոն ընկալեալ զտէրութիւնն յեղբօրէն առաւելաւ յամենայն բարութիւնս քան զնախնիսն իւր։ Եւ ևս ընդարձակեաց զսահմանս տէրութեանն։ Եւ մինչդեռ կայր քաջութեամբ և բարութեամբ, ել ի վերայ նորա Ռոստոմ յազգէ Իսմայէլի անթիւ զօրօք, և նկուն եղեալ օգնականութեամբն Աստուծոյ խորտակեցաւ առաջի մեծին Լևոնի, և մնացեալքն փախստական եղեն· տիրեաց և կողմանցն Սավրիոյ մինչև յԻտալիայ։ Էառ զԱռակլիա և զԿեսարիա, և ընդ գանձուց փոխանակեաց։ Բազում ամրոցս և դղեակս շինեաց, յոլով վանորայս և աղքատանոցս կազմեաց, և գոտեացն տունս և ռոճիկս պարգևեաց, և բարութեամբ զաշխարհն իւր ելից։ Զոր զքա-

րիոյ, վարէր զիշխանութիւն ըստ հաճոյից Աստուծոյ՝ զի էր այր բարեպաշտ և ողորմած, մեծախորհուրդ և առատամիտ, վարժեալ հին և Նոր օրինօքն Աստուծոյ։ Տեղեակ գոլով և ամենայն իմաստասիրական արհեստից. զորմէ ասեն հոգի մարգարէութեան ունէր. որ և բազում դըժուարալոյծ բանս մեկնեալ, զոր գտանի այժմ առ մեզ։ Կեցեալ սա այսպիսի բարեպաշտ կենօք՝ փոխեցաւ յաշխարհըն կենդանեաց, և հանգուցեալ եդաւ ի դամբարանի ի հռչակաւոր անապատն սուրբ ի Դրազարկն։

Եւ զերկիր իշխանութեան իւրոյ և զմատաղ որդին իւր վստահացաւ յանձըն իւր Թումաս անուն իշխան մեծ, զոր և Պայլ իսկ ետ Հայոց յետ իւր։ Այլ Մլեհն լուեալ զմահ եղբօր իւրոյ զմեծին Թորոսի, էառ զոր բազում ի Նուրատին սուլթանէն և եկն առնուլ զտէրութիւն ի վերայ Հայոց. և բազում չար հասուցեալ աշխարհիս Կիլիկեցւոց, յորմէ նեղեալ բնակիչք և իշխանք աշխարհիս, կամօք ձեռընտու եղեն նմա, տիրեալ ի վերայ ինքեանց։ Ուստի ընդ գալն նորա՝ Թումասն փախչէր յԱնտիոք, ուստի և եկեալն իսկ էր. և զորդի Թորոսին ամբարիշտք ոմանք կալեալ սպանին։

Եւ Մլեհն տիրեաց որոց ցանկայր անձն նորա։ Սակայն վասն խստասրտութեանն ոչ կարացեալ յերկարել, վաղվաղակի սպանաւ ի զօրաց իւրոց ի քաղաքն Սիս և թաղեցաւ ի վանքն Մեծ-Քար կոչեցեալ, զոր իւր իսկ շինեալ էր։

Եւ զօրք աշխարհին առաքեալ բերին զորդիսն Ստեփանէի, որ սնանէին առ քեռին իւրեանց Բակուրան ի Տարսոն, և կացուցին իշխան և Պարոն զՌուբէն զորդի Ստեփանէի. որ եղև այր աշխարհաշէն, առատամիտ և բարեգործ, որոյ եւ համբաւ անուան նորա ընդ ամենայն աշխարհ։ Վասնորոյ Հռովմայեցիքն զնա պատուեալ յազգէ

թագաւորութեանն կին ետուն նմա․ յորմէ ծնաւ երկուս դստերս։

Սակայն ի տէրանց Լամբրունի եղև դաւ նմա․ զի սղաբեալ էր Ռուբէն զԼամբրուն․ և նոքա նեղեալ յղեցին առ բրինձն Անտիոքու զի ելս հնարեսցէ իրացն․ իսկ բրինձն խաբանօք ի ճաշ կոչեալ զՌուբէնն՝ արգել զնա յԱնտիոք՝ վստահանալով թէ կարասցէ այնու զԿիլիկիա առնուլ։

Այլ Ռուբէն յղեաց առ եղբայր իւր Լևոն, նստել յաթոռ Պարոնութեան, և պահել զերկիրն, և պնդել զաղար բերդին Լամբրունի։ Եւ Լևոն և իշխանքն այսպէս արարին։ Իսկ բրինձն իբրև ետես եթէ ոչինչ շահի այնու, ապա անկաւ ի բանս վաճառելոյ․ զոր հաւանեալ Պարոն Լևոն, և իշխանք ետուն զանձ և երկիր․ և թափեցին զՌուբէն․ որ և եկեալ յինքն առեալ զպարոնութիւնն կեցեալ աւուրս ինչ բարիոք կենօք, և ի վախճան մահու հասեալ խրատեաց զեղբայրն իւր բազում իմաստութեամբ և բարութեան խրատով՝ թողեալ ի նա զիշխանութիւնն և զդստերս իւր, ինքն հանգեաւ ի Քրիստոս և կրօնաւորեալ թաղեցաւ ի Դրազարկն։

Լևոն ընկալեալ զտէրութիւնն յեղբօրէն առաւելաւ յամենայն բարութիւնս քան զնախնիսն իւր։ Եւ ևս ընդարձակեաց զսահմանս տէրութեանն։ Եւ մինչդեռ կայր քաջութեամբ և բարութեամբ, ել ի վերայ նորա Ռոստոմ յազգէ Իսմայէլի անթիւ զօրօք, և նկուն եղեալ օգնականութեամբն Աստուծոյ խորտակեցաւ առաջի մեծին Լևոնի, և մնացեալքն փախստական եղեն․ տիրեաց և կողմանցն Սավրիոյ մինչև յիտալիայ։ Էառ զԱռակլիա և զԿեսարիա, և ընդ գանձուց փոխանակեաց։ Բազում ամրոցս և դղեակս շինեաց, յոլով վանորայս և աղքատանոցս կազմեաց, և գոտեացն տունս և ռոճիկս պարգևեաց, և բարութեամբ զաշխարհն իւր ելից։ Զոր զբա-

ընդդիմութիւնն նորա լուեալ թագաւորք երկրի՝ ատէին զնա թագ առնուլ. յորոց և Ումբրուրն Ֆռանգաց (Ալամանաց՝ գրէ պատմագիրն Սմբատ), և կայսրն Յունաց առաքեցին նմա թագ և գանձ բազում: Եւ նա ընկալեալ զայն աշխարհաժողով բազմութեամբ և եկեղեցւոյ լրութեամբ, պսակեցաւ թագաւոր Հայոց, և նորոգեաց զաթոռ և ըզգաւազան թագաւորութեան Թորգոմայ. և եկաց խաղաղութեամբ զաշխարհ և բարութեամբ իբրև զդրախտ պտղաւէտանեալ. ամուսնացոյց զդուստր եղբօր իւրոյ յԱնտիոք. և այլս առեալ զԱնտիոք ետ նմա՝ և որդւոյ իւրոյ, այնմ որ ընծայ Ռուբէն կոչեցաւ: Եառ զՍրատաս և զՊաղրաս. տիրեաց և Լամբրոնին: Յետ ամաց եկն ի վերայ նորա սուլթանն Հռոմոց Քայքաւուզն և պաշարեաց զդղեակն զԿապանն. ընկճեաց և զիշխանսն Հայոց և զօրավարութիւն զպարոն Կոստանդին: Իսկ արքայն Լևոն առեալ զմնացեալ զօրս իւր, ապստամբեաց յաշխարհէն Գաւրիայ և բազում ոճիրս գործեաց. և առեալ զաւառ և զաւար դարձաւ ի Կիլիկիայ: Զօր լուեալ Քայքաւուզն, եթող զկապանն և զերկիր թագաւորին և անօթաք դարձաւ յաշխարհ իւր, ընդունել զնոց դարձոյց զիշխանսն և սէր երդմամբ ետ արքային Լևոնի: Բայց արքայն Լևոն կացեալ ի պարտութեան զերկոտասան ամ, և թագաւոր իբ. ամ, փոխեցաւ առ անմահ արքայն Քրիստոս: Եւ հանգուցաւ ի սուրբ ուխտին յԱկներն, վստահացեալ զերկիր իւր և զդուստր մի իւր Զապէլ անուն՝ յիշխանն ոմն Ատան անուն, որ խնկոյն սպանեալ եղև ի Հաշիշեանցն ի Սիս: Եւ ամբարձեալ աղգականն Լևոնի, պարոն Կոստանդին էառ յինքն զիշխանութիւնն Հայոց. և զդուստր թագաւորին Լևոնի զԶապէլ ամուսնացոյց յորդի իւր ի Հեթում. որ և օծաւ թագաւոր Հայոց: Եւ եղև բարեպաշտ և անուանի առ ամենեսեան:

Նաև այս արքայ Հեթում ի թագուհւոյ իւր Զապելէ զԼե-

ւոն․ որ այժմ է Թագաւոր. և զեղբայր իւր զԹորոս, որ խողխողեցաւ ի զօրացն Հագարացւոց, և զատերս բազումս. և աստուածահաճոյ կենօք կային ի Քրիստոս։ Իսկ ի վախճան կենաց հասեալ Թագուհւոյն բարեպաշտի փոխեցաւ ի Քրիստոս, և եդեալ կայ ի սուրբ ուխտն ի Դրազարկն։

Յայնժամ արքայն Հեթում խորհրդածեալ զխաղաղութիւն աշխարհիս Հայոց, յուղի անկեալ գնաց առ ազգն Մուղալ, զոր Թաթարն կոչեն. և յուխտ մտեալ ընդ նոսա, ըղմշտնջենաւոր խաղաղութիւն այսու ստացաւ աշխարհի իւրոյ ի նոցանէ, որ ապականէին զամենայն աշխարհ։ Յայսմանէ լցեալ նախանձու պաշտօնեայքն Մահմէտի, ամենայն ուստեք նիւթէին զնենգութիւն ի վերայ Հայոց։

Այլ նա օգնութեամբն Աստուծոյ, և ձեռնտուութեամբ Մուղալ զօրուն էառ զմեծն Գերմանիկէ և զԲեհեսնի. թափեաց և զնախնեաց իւրոց զաշխարհ զյափշտակեալս յայլոց։ Եւ մինչ կայր աշխարհ Հայոց ի հաշտութիւնն Աստուծոյ և ի բարութիւնն, յայնժամ բազմապատիկ մեղօք լցեալ ազգ մարդկան ձգեցին ի վերայ ինքեանց զարմանասաստ բարկութիւնն Աստուծոյ. յորմէ եղև զօրացեալ ազգն Հագարացւոց. և բռնակալեաց ոմն ծառայ յեգիպտոս. և տիրեաց ամենայն տանն Շամայ. և շարժեցաւ ընդդէմ քրիստոնէից. աւերեաց զծովեզերեայսն. քակեալ կործանեաց զմեծն Անտիոք. գերեաց անհամար անձինս քրիստոնէից, և զանթիւս մաշեաց ի սուր սուսերի։

Բայց յառաջ քան զայս եկն ի վերայ Թագաւորին Հեթմոյ և տանս Հայոց. վանեաց զզօրսն քրիստոնէից. ըսպան զԹորոս զորդին Հեթմոյ Թագաւորին, և զմեծն Լևոն որ այժմ է Թագաւոր, յետ բազում քաջութիւնս կատարելոյ նորա՝ ըմբռնեաց զնա ի գերութիւն։ Վասնորոյ և յայնմանէ համարձակեալ եմուտ յաշխարհ Հայոց և հըրկիզութեամբ ապականեաց, և զբնակիչսն ի սուր մաշեաց,

զառ և զաւար առեալ՝ ել ողջամբ և գնաց յաշխարհն իւր։

Բայց որդի թագաւորին Լևոնի՝ ոչ զանգիտեալ ի ծառայութենէ խամայելացւոցն՝ այլ պինդ հաւատով և արիագոյն սրտիւ կացեալ ի գերութեանն, նախ բանիւք քաջալերէր զբնակիչս որ յամրոցս աշխարհիս գայթագղեալք էին, պինդ կեալ և ոչ տալ ի ձեռս։ Եւ ապա ի յանդիման լինելն սուլթանին, զարմացոյց զամենեսին իմաստուն բանիւքն և ահարկու կայիւքն, պատրաստ գոլով ի հարցմունսն և ի պատասխանիսն։ Այլ և ի ձիընթացս ասպարիսի ելեալ ընդ սուլտանին, առաւելագոյն գտաւ քան զամենայն զինուորսն ի հրահանգս ձիավարժութեան, մինչ զի յամենայն գործս և ի բանս նորա հաճեալ և հաւանեալ սուլտանն, ազատեաց զնա ի բանտէ և ի կապանաց։ Եւ պատգամ յղեալ առ թագաւորն Հեթում, և սիրով և երդմամբ մեծագոյն պարգևօք դարձոյց զմեծն Լևոն յաշխարհ իւր։ Որ և ի գնալն վերստին նորոգեցան բնակիչք Կիլիկիոյ և ամենայն զարմք քրիստոնէից· և իսկոյն հայր նորա և ամենայն աշխարհն եդին զնա յաթոռ պարոնութեան· քանզի ոչ առ յանձն լինել թագաւոր յաւուրս կենաց հօր իւրոյ։

Յետ այսորիկ հիւանդացաւ թագաւորն Հեթում, որ և մեռաւ իսկ, լեալ կրօնաւոր թաղեցաւ ի սուրբ ուխտն ի Դրազարկն (յամի Տեառն 1269· և Հայ· ՉԺԸ)։

Եւ մեծն Լևոն սուգ պահեալ զերիս ամիս ցաւագին անձամբ, և ապա մեծարեալ ի Ղանէն և յամենայն թագաւորաց մերձակայից և հեռաւորաց, միաբանութեամբ աշխարհին օծաւ թագաւոր ի վերայ ամենայն Հայոց· եթող ի սրտէ զյանցանս ամենեցուն՝ որք սխալեալ էին նմա· շնորհեաց պարգևս ամենեցուն։

Է սուրբ արքայս Հայոց առատամիտ, ողորմած, ունկընդիր զզուելոց, ապաւէն վտանգելոց, ողջախոհ և մաքուր,

երկայնամիտ և ժուժկալ, և յամենայն նեղութիւնս համբերող նման Յովբայ, և մեծախորհուրդ իբրև զնա ի փորձութիւն անկեալ նման նմա. քանզի յիշեալ զնոսա որ աւուրս (յաւուրս) Լևոն Թագաւորիս եմուտ ի իւրեանս (յիւրեանս), դարձեալ աւուրս (յաւուրս) Լևոնի եկն զօրօք բազմօք աշխարհս Հայոց. և եկեալ Արապ և Թուրքման ամբոխիւք որ ընդ նմա միաբանեալ էին, և աւարեցին դարձեալ զաշխարհս Կիլիկիոյ: Եւ արքայն Լևոն ըստ բնական քաջութեան իւրոյ զամենեսին յորդորէր մարտնչիլ ընդ Հագարացիսն. այլ զօրքն ոչ առին յանձն, զի սակաւք էին: Բայց իբրև թշնամիքն գնացին, զամենեսեան քաջալերէր և մխիթարէր և առատապարգևօք յանձանձէր, մինչև հայեցեալ Աստուած ի պնդագոյն հաւատս նորա և սէր՝ դարձոյց զքաղցրութիւն ի վերայ մեր, և ընկիզքն պարար բնակելոցս ի մէջ ցաւոց. քանզի ետ մերոյ Թագաւորիս յաղթութիւն ընդդէմ թշնամեաց. նախ կոտորեաց զբազում զօրս սուլտանին Մսրայ ի Հարունին, և ապա բազումս ի Թուրք սեռէն՝ և յոլով և աւար շահեցաւ. այլ և եգիտ շնորհս առաջի գլխաւորի Մուղալ զօրուն, մինչ զի պարգևս և պատիւս յոլով շնորհեաց նմա. ամէն: *

---

* «Արարատ» 1870. էջ. 355 Թագաւորական ճաշոցից Մատենադարանի Ս. Էջմիածնի № 892.

Իսկ իմ ի գրելոյ զմատեանս ոչ թուլացեալ, քանզի առնուլ ի սմանէ զլուսաւորութիւն հոգւոյ, յառընթեր նըստելոյ միայնութեամբ սուրբ ուխտիս, այլ հրաժարեցի . . . և խնամօքն Քրիստոսի ի վերջին կէտս ժամանեցի. և սպառաւորեցի զկնի եկեղոցդ մատռուակութեամբ զխառնեալ բաժակս աստուածային իմաստից ի հոգևոր մեր հօրէս զմայլեցուցիչ հոգւոց և մխիթարութիւն բժշկութեան ախտացեալ մարմնոց։ Եւ յաւարտումն սորին փոքր ինչ թողի ձեզ զպատմութիւն կենաց սորին ընթացից. զի մի մնասցէ տարակոյս յառաջեալ ժամանակին սորին քննողի ո՞վն, և ուստն, և զխո՞րգն. որպէս և մեք այսօր ունիմք զքաղաքում հարց մերոց և վարդապետաց Հայոց այս ինքն զԴաւիթ Ներգինեցի, և զԳրիգոր Նարեկեցի, և զՄովսէս Խորենացի, և զայլս, որոց ի բանիցն պարարտութենէ զուարճանամք, և զփո՞րդն կենաց և վարուց փափագելով գտանել ոչ ունիմք և ոչ մի բան վասն երանելեացն պատմութեան։ Ցաղագս այսր զսորայս մինչ յայսօր է կենաց իւրոց ժամանակ ԼԸ ամ, ցուցաք համառօտ։ Եւ մաղթեմք Քրիստոսի տալ զսոյն մեզ և ս յերկարութեամբ աւուրց ի գլուխ բարի հովուութեամբն և հանճարեղ այցելութեամբն՝ խնամիչ սուրբ ուխտիս և առաջնորդ ժողովոյս։

Եւ զիմս աղքատութիւն դնել սորին օրհնութեամբ՝ ի դամբարան հանգստեան ընդ սրբոց իմոց հարցն, որ այժմ հուպ եմ սոցին ծերութեան ալեօքս հոծեալ։ Իսկ եթէ այլ ինչ ի շնորհացն Աստուծոյ պողաքերէ ծառս մեր տընկեալ ի դնացս ջուրց սուրբ գրոց, մանկագունաց աշակերտաց սորին, տացէ Աստուած զօրութիւն գրչաւ ի տառ գրոց ժողովել, և զընթացս յառաջատուութեան վարուց սորին և զկէտ զկնի եկեղոցդ պատմել։ Այլ ես աղաչեմ յիմս վատակ սխալանաց բայից և բառից թերութեան ընթերցողացդ ներումն շնորհել, զի այդչափ զօրեցի իմովս

տկարութեամբ յարմարել· և ի վայելեալն ի դոյն հոգւոյ մխիթարութեամբ՝ ցօղ աղօթից ձեր կաթեսցէ ի գոգ մերոյն հանգստեան, և բեղմնաւորեալ սնուսցէ զթաղեալքս յարգանդ երկրի գարնայնոյ յարութեանն պայծառանալ նորոգմամբ ընդ յառաջ Քրիստոսի, և Աստուած խաղաղութեան՝ որ ետ մեզ զմխիթարութիւն շնորհաց և յոյս բարեաց շնորհօքն իւրովք՝ ի սուրբ ձեռնէ աստի՝ մխիթարեսցէ զմիտս ձեր և հաստատեսցէ ի յոյսն և ի սէրն Քրիստոսի. որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ի թուականի Հայոց ՈԼԹ գրեցաւ աստուածախօսութեամբ մատենիս օրինակն ձեռամբ Սամուելի Նուաստ և յետին գրչի՝ հրամանաւ սրբասնեալ վարդապետի և արհեպիսկոպոսիս մերոյ տեառն Ներսիսի։ Որոյ փառահացեալ յաղորմութիւնն Աստուծոյ և յանհաս գիտութիւնն և յիմաստութիւնն իւր, համարձակեցաւ ի հոգելից սաղմոսին մեկնութիւն, և մեկնեաց զսա և եթող ի յիշատակ իւր և ի վայելումն սրբոյ եկեղեցւոյ մանկանց այնոցիկ՝ որք ունիցին ականջս ուղիղ լսել զբանս իմաստից սորա, և խնդրել ըղթողութիւն մեղաց ի Քրիստոսէ՝ որ է օրհնեալ յաւիտեան, ամէն։

Յայսմ ժամանակի յափշտակեցաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ ի Ցովսեփայ՝ որ տիրէր Եգիպտոսի և Արաբիոյ և Դամասկոսի. ի թուին ՈԽԷ. և շարժեցան հրամանաւ հայրապետին Հռոմայ թագաւորք և իշխանք բազումք, և անթիւ զօրօք յարևմտից, և գան կրելով զխաչն Քրիստոսի առ ի փրկել զսուրբ տեղիսն։ Եւ այս ամք երեք յապաղէ կամքն Աստուծոյ զփրկութիւն, և դեգերին տակաւին առընթեր Պտղոմիդայ։ Գրեցաւ ի նախայիշատակեալ սուրբ ուխտս Սկևռայ առընթեր հայրենատուր ամրոցի տէրանց մերոց Լամբրունի, յիշխանութեան մեծահանճար և աս,
Սևաստոսին Հեթմոյ, և ի վերակացութեան ս

Ներսիսի և եղբարց սոցին Ապիրատի և Շահնշահի, զորս տացէ Քրիստոս ի հոգևոր և ի մարմնաւոր իշխանութիւնս բազում ժամանակս: Եւ ի փոխելն յաշխարհէս ի պարս սրբոց հայրապետացն դասեսցէ ի ժողով արքայութեանն իւրոյ ընդ ամենայն սուրբս:

Յիշեցէք բարեաւ զբարի ծնողս սոցին զնախափոխեալն առ Քրիստոս զմեծանունն Աշխէն, հանդերձ երեց դստերաւն Մարեմաւ և կրտսեր որդեկաւն Գրիգորիւ՝ զի հանգիցեն ի գոգն Աբրահամու, և և մխիթարեսցին փառօքն Ղազարու և մայր սոցին Շահանդուխտ ամենաբարի և ճգնազգեաց այժմ կրօնաւորեալ ի ձեռաց որդոյ իւրոյ սուրբ հօրս երկու դստերօք Շուշանաւ և Տալիթայիւ, որք նորին ճգնող շաւղացն հետևին, զի մխիթարեսցին ի կեանս զաւակաց իւրեանց և եղբարց, և սոքօք ընդ նախահանգուցեալս փրկեսցին յիշխանութենէ խաւարի, և փոխեսցին յարքայութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի մասն վիճակի սրբոցն, ի լոյսն և յարազուարճ խնդութիւնն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր:

Ամենապատճառ և սկզբնական էութիւն երանական Երրորդութեանն սրբոյ որ բոլոր գոյից է պատճառ, և հանուր էացելոց սկիզբն արմատ և աղբիւր գոլով բարեաց, իբր ամենահզաւրուստ և առաջին բարի, որպէս աստուածաբանէ ծայրագոյնն աստուածաբանից որդին Որոտման յաստուածաւանդ ասացեալսն, «ամենայն ինչ նովաւ եղև, և առանց նորա եղև և ոչինչ որ ինչ եղևն»: Եւ յառաջ քան զայս նախաձայնէր ոմն մարգարէ, «որ ինչ բարին է՝ նորա է»: Եւ ի նոյն մտաց զօրութիւն, համաձայն ի միւսոյ սեանն կարծեցոյ աստուածեղբօրն մեծի՝ արտաճառ վարդապետութիւն. «ամենայն աւէ տուրք բարիք և ամենայն պարգևք կատարեալք ի վերուստ են իջեալ ի Հօրէն լուսոյ». որով ուսեալ վարդապետեցաք. զի որպէս ըստ բնութեանն էա-

կութեան պատճառ է անպատճառապէս, և սկիզբն անժամանակապէս․ Որ էն Հայր անսկզբնակից Բանին իւր Որդւոյ, և անհատաբար Հոգւոյն բղխելոյ ի նոյն պատկեր համեմատութեան՝ և յայլ տարազ իմացման իմանամք, զի ըստ ստացման և արարչութեան դարձեալ՝ նոյն համագոյ և միասնական կատարելութիւն, երրեակն անձնաւորութիւն պատճառ է պատճառաւորապէս, յոչէից յանգոյից բոլոր էից ամենից, որով արժան և իրաւ պատշաճաւորութեամբ սկսմամբ յինքենէ յառաջ եկեալսն էութեամբ, սկսաւ դարձեալ՝ և կարգաւորեաց օրինադրութեամբ, ըղբնակսն լոկ՝ բնական կարգաւոր շարժմամբք, և զբանականսըն՝ բանական բարի օրինադրութեամբ, որով և որք առ ի նմանէ ուսեալք և սկզբնաւորեալք՝ առաջինն յաշխարհի սկզբունք և պատճառք եղեն բարեաց արժանապէս իբրու նորին ճշմարիտ բարեաց պատճառին և սկզբան պատկերք․ պատուեցան և մեծարեցան, և զանմահութեան նորին օրինակ, անմահ յիշատակաւն յերկրի յանձինս տպաւորեցին, որպէս գոչէ խօսելով անվախճան, իբրու միշտ կենդանի առաջին պատարագողին Աբելի արիւն, և երևի և մնայ անսպառ պտուղ ողջախոհութեանն Նոյի՝ յաշխարհ ամենայն, և ի բնութիւն մարդկային որ նորին յազգի արդարանալոյն փոխանակ դարձեալ ծաղկեցան։ Նաև հօրն և սկզբան հաւատոցն արդարութեան, Աբրահամու ուխտ և ողորմութիւն պահեցաւ մինչև ի հազար ազգ․ նմանապէս և որ առաջին առաջնորդ եղև ոշխարհի գըրաւոր օրինաց և սահմանադրութեան, Մովսէս մեծն աստուած թագաւորաց կոչեցաւ, և նախապատիւ և մեծ մարգարէից հանուրց պատուեցաւ, ըստ նմին և անուանի յառաջին աստուածապաշտ թագաւոր[illegible]ր նախ ի նոցանէ պատուեաց զԱստուած սև[illegible]։

Եւ մեծ ի ծնունդս կանանց Յովհ[illegible] չնաշ-

*խարհիկ հրեշտակական սկսաւ զանապատի կեանս, և մանաւանդ վասն Նախկին զքարուոզն դաւանելոյ կրօնս, հիմրն և փակակալ Թագաւորութեանն երկնից, յերանելի և միայն հզօր բնութենէն երանեալն Պետրոս, առաքելոցն գլուխ արժանապէս պատուեցաւ և մեծարեցաւ. որով այսչափ նախապատուութիւն այնոցիկ որ զքարին սկզբնաւորեցին, բազմաց յորդորումն եղև և նախանձ. զանազան բարեաց պատճառ և սկիզբն լինելոյ, որպէս և ըստ որում՝ այլք այլոց, նմանօրինակ և մերս աշխարհի և ազգի հայր լուսաւորութեան և հաւատոց ծագեալ փայլեաց առաքելաչափ մեծ Լուսաւորիչն Գրիգորիոս: Եւ ի նորին զարմէ լուսոյ շառաւիղք ծագեալք զանազան նշոյլիւք ճառագայթից, զմերս լուսափայլեալ շնորհազարդեցին ըզտոհմ և զեկեղեցի, որպէս յետ գովեալ որդոցն նորին համանման Թոռն նորին մեծն Ներսէս, կարգօք կրօնաստանեայց և բարեգործութեամբ տնանգաց, երկնի հաւասար առաքինութեամբ զաշխարհս Հայաստանեայց նորոգեաց:*

*Եւ սուրբ հայրապետն Սահակ գրօք և Թարգմանութեամբք ի գնացս գետոց Աստուծոյ ուրախ արար զեկեղեցւոյս քաղաք, յորոց վերայ իբր ի բարւոք հիման շինելով, ոմանք փիլիսոփայական գետս յաւելին և այլք ըզմեկնութեան մտաց շաւիղ մաքրեցին. կէսք զեղանակաց երգս կարգեցին, և այլք զկանոնաց չափ սահմանեցին. յորոց յամենեցունց և յետ յոլովից ի վախճան ժամանակաց և ի վերջինս դարւոյ, յանբարի և ի նուազեալ ժամանակս իբր ի դրունս ձմերայնոյ ի լռնացեալ ճուռ կամ ողկոյզ ինչ զարմանալի փայլեաց և երևեցաւ ի զարմէ և ի ցեղէ ընտրութենէ մեծ լուսաւորչին համեմատ առաջնոյն երկրորդ գերամաքուրն Ներսէս, որ զհայրենին յաջորդեաց գահ և աթոռ հայրապետութեան ի Կլայն Հռոմ-*

մականի, և զամենայն նորոգեաց ըստ նախնի Հարցն բարեզարդութեան զառ ի զանազան թշուառութեանցն աղաղաւաղեալ եկեղեցւոյ կարգս, որում ի նորին արեան մերձաւորութենէ, մանաւանդ յաշակերտութենէ, լուսափայլն բանի և մաքուրն վարուց յետ նորա ծագեաց և փայլեաց նորին ձեռնասուն եղբօր ծննդոյ որդի, սուրբ և երջանիկ հայրն մեր Ներսէս, որ ըստ եռանդուն բորբոքման ի սըրբագործ Հարազատի սէրն ըստ Ջեբեդեայ որդւոյ զսիրելին ունի յատկութիւն մականկոչութեան, զի որպէս գործասէր մեղու ի բազում ծաղկանց զբիւրապատիկ և զանազան ժողովեաց զբարեաց նախանձ յամենայն նախնեաց սըրբոցն գերազարդից զՀարցն և զՀայրապետաց՝ զճգնաւորացն և զմիանձանց, մանաւանդ թէ առաւել լրացեալ մարգարէական և առաքելական աստուածաբանութեամբն, և ի նոցին հոգւոյ շնչմանէ զբազմաճաշակս այս խորխս՝ որ քաղցր է քան զմեղր բերանոյ, և քան զոսկի և զականս ընտիրս պատուականս երկասիրութեամբ, գործեաց և եթող մեծամեծացն հոգւով և տնանկաց ի ճշմարիտ բժշկութիւն հոգւոց, միանգամայն և ի նախանձ առաքինի գործոց, և յորդորումն և ի սէր ուսումնասիրութեան, իբրու երկրորդք ի յետին ժամանակս ի յազգիս մերոյ սկիզբն և յորդորիչ լինելով մեկնողական իմաստից և հոգևոր այլաբանութեանց, որով բարգաւաճեալ և եկեղեցի, զի վաստակով քրտնաջան հարցս փարթամացեալ, ոչինչ աղքատ գտանիմք քան զայլ եկեղեցիս որ փայլեցին նախնի մեկնողացն և հարցն սրբոյ դասք: Մանաւանդ առաւել սիրելով որպէս զայլ ամենայն գիրս՝ և զսոյն հոգեշահ տառ՝ արքայս Հայոց Լևոն, և բերկրելով սովաւ պանծանօք, և զսոյն կամեցաւ ընծայ առաքել աշխարհին արևելից, զոր և յիշատակեալն ի նախնեաց իրաւացի է, զի նախնական զարմ թագաւորիս մերոյ ի վերջին ժամանակս

էջ. 113—119. այդ բաժանումն ոչ թէ իրաւաստական էր, այլ հաւատակցութեան։ Նոյն ժամանակ վտանգ էր սպառնում և Աղուանից եկեղեցուն, բայց քաղաքական հանգամանքների աննպաստաւորութիւնը չէր թոյլատրում, որ յաջողուէր Հայոց հայրապետների եռանդուն գործունէութիւնն։ Մի նշանաւոր կանոնագրութիւն ցոյց է տալիս այդ եկեղեցիների բարեկամական կապակցութեան էութիւնը։

Այլ ի նոյն գրոց տեառն Վերոյի Աղուանից կաթուղիկոսի. յառաջաբան պատմութեան աշխարհին Աղուանից. կանոնք և սահմանադրութիւն ժողովոյն Աղուանից, որ եղև ի ժամանակս Եղիայի Հայոց կաթուղիկոսի, որ էր ԼԸ. աթոռակալ ի սրբոյն Գրիգորէ։

Ի ժամանակին յորում կարգեցաւ ի քահանայապետութիւն Աղուանից Միքայէլ քահանայ՝ խոսեցաւ աթոռակցօքն իւրովք, որք էին. Յովհաննէս Կապաղակու եպիսկոպոս, Սահակ Ամարասու եպիսկոպոս, և Եղիազար Հոշոյ եպիսկոպոս, և Իսրայէլ Մեծկուանից եպիսկոպոս, և Զաքարիայ Մեծիրեանց եպիսկոպոս, և Յովակիմ Գարդմանայ եպիսկոպոս, յաղագս բարեկարգութեան աշխարհիս և ուղղափառութեան հաւատոյս։

Արդ ես Շիրոյ Ապիհի-պատրիկ Գարդմանայ տէր և Աղուանից իշխան, Վարազ-Գրիգոր պատրիկ Աղուանից սպարապետ, Բաբի Շահրփերոզեան, Զառմիհր ի Վարազ Գուրդաքեան, Թէոդորոս Վստամ Ցարևմանեան, Ռստոմ ի Վաչագան ի Վարազաքեան Յունսատահեան, Վահան ի Վարազվահանեան, Սմբատ ի Քարոյեան, Մահումատ ի Դանքարեան, Գրիգոր ի Ռահատեան, Պատրիկ ի Քամղիտան, Արեքո ի Վարոքեան, Շերոյ ի Մերդանշահեան, Վարդիչ ի Թամգիկան հիւպատոս, ՁԸ թուականութեանս Հայոց այսպէս կանոնեցաք, թէ յորժամ դուք ձեռնարկէք յաղագս քաղկեդոնական աղանդոյն, և կամ Մայրագոմեցոյն. եթէ վասն պայլի կենաց, և թէ վասն խառն ամուսնութեան, և թէ զի՞նչ և իցէ՝ ոչ ոք կարէ ելանել ըստ ձեր հրամանէ, և եթէ ոք ելանէ՝ յԱստուծոյ դատապարտեալ եղիցի, և դուք իշխան լիջիք ըստ կամաց ձերոց դատել և ոք յիշխանաց չունի իշխանութիւն օգնել, և ի պայմանիս, զոր կարգեցաք հաստատուն կացցուք։

Եւ կնքեցի զգիրս ես Շերոյ Ապահի պատրիկ Գարդմանից տէր և Աղուանից իշխան՝ հանդերձ ամենայն ազատօք։ (Գրչագիր Մատենադարանի Ս. Էջմիածնի № 58 և 100.)

29. Այս այն յուզմունքներն են, որոնք նկարագրուած են Սե-

բէոս էջ. 121—123, և պատահել են Կոմիտաս կաթուղիկոսի օրով։

30. Գրիգոր և Վրթանէս վարդապետների Կ. Պօլիս գնալու մասին հին տեղեկութիւն դեռ չունինք։

31. Տես. և Կիրակոս էջ. 29. . . . . «զԳորտոսակ, զԿիրակոսակ, զՊօղոսի տեսիլն, զԱդամայ ապաշխարութիւնն, զՏիադեկ մանկութիւն Տեառն, և զԵբիոս և զՃիռն օրհնութեան . . . ։

32. Մահմետ ելաւ առաջին անգամ 611 թուին ի Մեկկա՝ արաբական հեթանոսութիւնից քրիստոնէութիւնից և հրէութիւնից խառըն կրօնը քարոզելու։

33. Եզրաս կաթուղիկոսի մասին տես. իմ գրուածքն էջ. 122—129։

34. Տես. և Թովմայ Արծրունի II, Դ. Ասողիկ II, Ե։

35. Տես. Անանիայի Շիրակունւոյ մնացորդք բանից. Ք. Պ. Պետերբ. 1877. էջ 3. Ես ես արուպս ի Հայաստանեայց ուսայ ինմանէ զհզօր արուեստս զայս, որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհն մեր, առանց ուրուք լինելով ձեռնտու, միայն ջանիւ օգնականութեամբն Աստուծոյ և աղօթիւք Ս. Լուսաւորչին. թէպէտ և ոչ ոք եղև շնորհակալ իմոց աշխատութեանս. և ոչ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն, այլ ծոյլք են և ձանձրացողք. զի իբրև եկի ի Հայս, բազումք եկին առիս յուսումն և սուղ ինչ խելամըտեալ՝ ոչ մնացին կատարման արուեստիս. թողին զիս և մեկուսացան, և սկսան ուսուցանել՝ զոր ոչն գիտէին, և ոչ էին հասու։ Կեղծաւորք և սնափառք, ցուցանել կերպարանս գիտութեան և կոչիլ ի մարդկանէ ռաբբի։ Եւ ասեն ի վերայ իմ պարսաւանս, որք յինքենէն յերիւրեալք . . . ։

36 Այս մեծ ժողովում գրուեցան հետևեալ տասը նզովքները. Նզովք յառաջին ժողովն Մանազկերտի։

ա. Եթէ ոք ոչ խոստովանի զսուրբ Երրորդութիւն, մի բնութիւն, և մի աստուածութիւն յերիս դէմս և յերիս յանձնաւորութիւնս կատարեալս հաւասարս՝ նզովեալ լիցի,

բ. Եթէ ոք ոչ խոստովանեսցի զբանն Աստուած մարմնացեալ ի սրբոյ կուսէն ճշմարտութեամբ այսինքն զբնութիւնս մեր առեալ զնմանէ զհոգի և զմարմին, և զմիտս առանց ապականութեան ասիցէ և կարծեօք և նմանութեամբ երևեալ զՔրիստոս՝ նզովեալ եղիցի։

գ. Եթէ ոք ոչ ասիցէ ի մեղանչական և ի մահկանացու մերմէ բընութենէս. առնուլ մարմին Բանին Աստուծոյ. յանմահ.

